Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ




№ 15 ՕԳՈՍՏՈՍ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս 2—52—78:*





# ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԻ ՄԱՍՆԱԿԻՑՆԵՐԻ ՓՈՐՁԸ ԴԱՐՁՆԵԼ ԲՈԼՈՐ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ, ՄՏԿ-ՆԵՐԻ ԵՒ ՍՈՎԽՈԶՆԵՐԻ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Վ. ՄԱՑԿԵՎԻՉ
ՍՍՌՄ գյուղատնտեսության մինիստրի տեղակալ

*Սովետական ժողովուրդը մեծ խանդավառությամբ կենսագործում է գյուղատնտեսության շեշտակի վերելքի վերաբերյալ պարտիայի ընդունած ծրագիրը: Այդ մեծ աշխատանքում նա հենվում է սոցիալիստական ինդուստրիայի հզորության վրա, որը հանդիսանում է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության առաջատար ուժը:*

*Անշեղորեն աճում է ՄՏ կայանների, կոլտնտեսությունների և սովխոզների տեխնիկական հագեցվածությունը: Միայն 1954 թվականին սոցիալիստական արդյունաբերությունը գյուղատնտեսությանը մատակարարեց ընդհանուր օգտագործման 137 հազար*





տրակտոր (15 ուժանոցի վերածած), 46 հազար շարահերկ տրակտոր, տասնյակ հազարավոր կոմբայն և բազմաթիվ այլ մեքենաներ։ ՄՏ կայաններում ստեղծված են մեխանիզատորական մշտական կադրեր, ամրապընդված է ղեկավար և ինժեներա-տեխնիկական աշխատողների կազմը։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը ժողովրդատնտեսական կարևորագույն խնդիր առաջադրեց՝ առաջիկա տարիներին հացահատիկի համախառն բերքը հասցնել տարեկան առնվազն 10 միլիարդ փթի, հիմնական անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնել ավելի քան երկու անգամ։

Այդ խնդրի լուծման համար անհրաժեշտ է առավելագույն չափով օգտագործել տնտեսության սոցիալիստական սիստեմի հսկայական հնարավորությունները, բարձրացնել հողագործության և անասնաբուծության կուլտուրան, բարելավել մեքենայական հզոր տեխնիկայի օգտագործումը, խիստ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, մոբիլիզացնել կոլտնտեսությունների, ՄՏ կայանների և սովխոզների բոլոր ռեզերվները։

Ոգեշնչված ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան



պլենումի որոշումներով, կոլտնտեսային գյուղի աշխատավորները գործադրում են իրենց բոլոր ջանքերը՝ պարտիայի նշած ծրագիրը ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու համար։ Չնայած գարնան ուշ բացվելուն և եղանակի բարդ պայմաններին, երկրում գարնանացանը կատարվեց լավագույն ժամկետներում։ Կոլտնտեսությունները և սովխոզները այս տարի 21 միլիոն հեկտար ավելի ցանք կատարեցին, քան անցյալ տարի։

Հացահատիկի և անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու գործում վճռական նշանակություն ունի եգիպտացորենը՝ որպես առավել բերքատու կուլտուրա։ Այդ կուլտուրան միաժամանակ լուծում է երկու խնդիր. մի կողմից ավելացնում է հացահատիկի արտադրությունը՝ կաթնա-մոմային հասունություն ունեցող կողրերի սիլոսացման հաշվին, մյուս կողմից՝ ավելացնում է հյութալի կերերի արտադրությունը՝ ցողունների սիլոսացման հաշվին։ Այս տարի կոլտնտեսությունները և սովխոզները ցանել են 17,9 միլիոն հեկտար եգիպտացորեն, որը 13,6 միլիոն հեկտարով ավելի է անցյալ տարվանից։ Հաջողությամբ կենսագործվում է խամ և խոպան հողերի

յուրացման վերաբերյալ պարտիայի և կառավարության նշած ծրագիրը։ Անցյալ տարի, ինչպես հայտնի է, ցանվեց 3,6 միլիոն հեկտար խոպան հող, իսկ այս տարի արդեն ցանվել է 20 միլիոն հեկտար՝ պլանով նախատեսված 13 միլիոն հեկտարի փոխարեն։

Դրական արդյունքներ են ձեռք բերվել նաև անասնաբուծության բնագավառում։ Վերջին ինը ամսում՝ հոկտեմբերի 1-ից մինչև հուլիսի 1-ը, 28 տոկոսով շատ կաթ է ստացվել, քան անցյալ տարի նույն ժամանակամիջոցում և 55 տոկոսով ավելի, քան 1953 թվականին։ Մթերվել և գնվել է 20 տոկոսով ավելի շատ կաթ, քան անցյալ տարի։

Այդ թվերը ցույց են տալիս, որ գյուղատնտեսության աշխատավորները ճիշտ են հասկացել իրենց առջև դրված խնդիրները և հաջողությամբ պայքարում են դրանց կենսագործման համար։

Գյուղատնտեսության հաջող զարգացման համար կարևորագույն նշանակություն ունի գիտության նվաճումների և առաջավոր փորձի մասսայականացումն ու արմատավորումը արտադրության մեջ։ Այդ գործում հսկայական դեր է պատկանում Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին։



1954 թվականի ցուցահանդեսում լայնորեն ցուցադրված էին գիտության նվաճումները և գյուղատնտեսության զարգացման գործում բարձր ցուցանիշներ ձեռք բերած առաջավոր կոլտնտեսությունների, սովխոզների և ՄՏ կայանների փորձը։ Ցուցահանդեսը հսկայական հետաքրքրություն առաջ բերեց աշխատավորների մեջ։ Ամեն օր ցուցահանդես էին այցելում տասնյակ հազարավոր կոլտնտեսականներ, ՄՏ կայանների և սովխոզների աշխատողներ, գյուղատնտեսության մասնագետներ, գիտական աշխատողներ, արդյունաբերական ձեռնարկությունների բանվորներ, ծառայողներ, ուսանողներ, դպրոցականներ։ Ցուցահանդեսի աշխատանքի ընթացքում այնտեղ այցելել է մոտ ութը միլիոն մարդ։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը հունիսի 5-ից վերսկսել է իր աշխատանքը։ Մեր երկրի սոցիալիստական գյուղատնտեսությունը անցած տարում առաջընթաց նոր քայլ կատարեց իր զարգացման մեջ։ Գյուղատնտեսական արտադրության վերելքի ծրագրի կենսագործման համար մղվող պայքարում կոլտնտեսությունները, ՄՏ կայանները և սովխոզները որոշակի հաջողություններ ձեռք բերեցին հողագործու-

թյան և անասնաբուծության մթերքների արտադրությունն ավելացնելու գործում։

1955 թվականի ցուցահանդեսին մասնակցելու իրավունք են նվաճել ոչ միայն առանձին կոլտնտեսություններ, սովխոզներ և ՄՏ կայաններ, այլև ամբողջ մարզեր և ռեսպուբլիկաներ, որոնք 1954 թվականին բարձր ցուցանիշներ են ձեռք բերել հացահատիկի, բամբակի և անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման գործում։

Առաջավոր կոլտնտեսությունների, ՄՏ կայանների, սովխոզների, մարզերի, երկրամասերի և ռեսպուբլիկաների փորձը լայնորեն ներկայացված է բազմաթիվ դահլիճների ստենդներում, նատուրալ ցուցադաշտերում և անասնաբուծական ֆերմաներում։ Ցուցահանդեսը արտացոլում է կոլտնտեսականների, ՄՏ կայանների և սովխոզների բանվորների, գյուղատնտեսության բազմաքանակ մասնագետների պայքարը գյուղատնտեսական արտադրանքի և առաջին հերթին հացահատիկի արտադրության ավելացման վերաբերյալ պարտիայի և կառավարության որոշումների կենսագործման համար։ Հացահատիկի համախառն բերքի ավելացման գործում վճռական դեր է պատկանում եգիպտացորենին։ Ցուցահանդեսից



երևում է, որ եգիպտացորենը անսահմանափակ հնարավորություններով օժտված կուլտուրա է։ Ցուցահանդեսի պավիլիոններում Չուվաշական ԱՍՍՌ Ստալինի անվան կոլտնտեսության, Մոսկվայի մարզի «Նոր կյանքի ուղին» կոլտնտեսության, Լենինգրադի մարզի Դիմիտրովի անվան կոլտնտեսության, Արխանգելսկի մարզի «Նոր կյանք» կոլտնտեսության և բազմաթիվ այլ կոլտնտեսությունների օրինակով ցույց է տրվում կերի բազայի ամրապնդման, անասնաբուծության մթերատվության բարձրացման և կոլտնտեսային էկոնոմիկայի վերելքի գործում եգիպտացորենի ունեցած զորավոր ազդեցությունը։

Եգիպտացորենի բերքատվության բարձրացման հզոր միջոց է հանդիսանում ցանքի կատարումը հիբրիդային սերմերով։ ՍՄԿԿ Կենտկոմի Հունվարյան պլենումը պահանջեց կազմակերպել հիբրիդային սերմերի արտադրություն, այն հաշվով, որ մոտակա 2—3 տարում եգիպտացորենի ցանքը կատարվի միայն այդ սերմերով։ Ցուցահանդեսում ներկայացված են եգիպտացորենի բազմապիսի սորտերը, ցուցադրված են հիբրիդային սերմերի աճեցման մեթոդները։

Հացահատիկային պրոբլեմի լուծման գոր-

ծում հսկայական նշանակություն ունի խամ և խոպան հողերի յուրացումը։ Ցուցահանդեսում լայնորեն արտացոլված է այն բազմաթիվ կոլտնտեսությունների, սովխոզների, ՄՏ կայանների, շրջանների, ամբողջ երկրամասերի և մարզերի փորձը, որոնք հաջողությամբ յուրացրել են խամ ու խոպան հողերը և ստացել հացահատիկի բարձր բերք։

Առաջավոր կոլտնտեսությունները և սովխոզները լայնորեն ցուցադրում են իրենց նվաճումները տեխնիկական կուլտուրաների, կարտոֆիլի, բանջարեղենի, բոստանային կուլտուրաների մշակման ասպարեզում։ Այդ առաջավոր տնտեսությունների օրինակով ցուցահանդեսի այցելուների համար ակներև է դառնում ագրոտեխնիկայի նոր, պրոգրեսիվ եղանակների արդյունավետությունը, որոնց թվին են պատկանում՝ շարահերկ և բանջարային կուլտուրաների քառակուսի-բնային և քառակուսի ցանքն ու տնկումը, բամբակենու նեղշար ցանքը, բանջարեղենի սածիլների աճեցումը տորֆա-հումուսային թաղարներում և այլն։

1954 թվականին շատ կոլտնտեսություններ, սովխոզներ, շրջաններ և մարզեր խոշոր հաջողությունների հասան անասունների



մթերատվության բարձրացման և անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման գործում։ ՌՍՖՍՌ 19 մարզերի սովխոզներում յուրաքանչյուր կովից ստացված կաթը կազմում է միջին հաշվով ավելի քան 3.000 կիլոգրամ, Բելոռուսական ՍՍՌ սովխոզներում՝ 3.339 կիլոգրամ, Էստոնական ՍՍՌ սովխոզներում՝ 3.649 և Լատվիական ՍՍՌ սովխոզներում՝ 3.885 կիլոգրամ։ Ցուցահանդեսում իրենց արտացոլումն են ստացել Չելյաբինսկի, Ռյազանի, Լենինգրադի, Վիննիցայի և մյուս մարզերի կոլտնտեսությունների նվաճումները, որոնք անցյալ տարի հասան կովերի կաթնատվության զգալի բարձրացման։

Ցուցահանդեսում լայնորեն պրոպագանդվում է առաջավոր կոլտնտեսությունների և սովխոզների փորձը կերի կայուն բազա ստեղծելու, աճող անասնաբուծությունը բոլոր տեսակի կերերով ապահովելու գործում։

Գյուղատնտեսական ցուցահանդեսը բազմաթիվ էքսպոնատներով ցույց է տալիս մեքենա-տրակտորային կայանների վճռական դերը կոլտնտեսային արտադրության վերելքի գործում։ Այստեղ ցուցադրվում է հողագործության և անասնաբուծության մեջ

կիրառվող 1.400 տեսակի մեքենա, որոնց թիվը շատ ավելի է, քան անցյալ տարի էր։

Ցուցահանդեսում լայնորեն ներկայացված են սովետական գյուղատնտեսական գիտության նվաճումները գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման ասպարեզում։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը կոնկրետ օրինակներով ցույց է տալիս կոլտնտեսային արտադրության պլանավորման նոր կարգը, նրա բացառիկ կարևորությունը գյուղատնտեսական կուլտուրաների արտադրության ավելացման համար։ Ցուցահանդեսի այցելուներն այժմ ծանոթանում են կոլտնտեսությունների զարգացման հեռանկարային պլանների հետ, որոնք ուղղված են ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու նպատակին։ Մեծ հետաքրքրություն է ներկայացնում Կուրսկի մարզի Կալինովկա գյուղի գյուղատնտեսական արտելի պլանը, որը դրված է «Կենտրոնական սևահողային մարզեր» պավիլիոնում։ Այդ պլանով նախատեսվում է 1955 թվականին հացահատիկի արտադրությունն ավելացնել երկու անգամ, անասնաբուծական մթերքնե-



րի արտադրության ավելացման առաջադրանքը կոլտնտեսականները որոշել են կատարել մոտակա երկու—երեք տարում։ Գյուղատնտեսության օրգանների անհետաձգելի խնդիրն է՝ լայնորեն տարածել առաջավոր կոլտնտեսությունների փորձը, որոնք արդեն իսկ այս տարի կարողացան պրակտիկայում կենսագործել պլանավորման նոր կարգը։

Պլանավորման նոր կարգը գյուղատնտեսական օրգաններից պահանջում է՝ ավելի խորապես ուսումնասիրել կոլտնտեսային արտադրության էկոնոմիկան, գիտականորեն հիմնավորված մոտեցում ունենալ երկրի տարբեր շրջաններում և գոտիներում գյուղատնտեսական այս կամ այն արտադրանքի պահանջը և արտադրության չափերը որոշելիս, հաշվի առնելով այդ արտադրանքի նկատմամբ եղած պահանջը՝ կենտրոնացված մատակարարումների և տեղական կարիքների համար։ Գյուղատընտեսական օրգանները և գիտահետազոտական հիմնարկները պետք է արդեն այժմ մշակեն գյուղատնտեսության էկոնոմիկայի կարևոր ու անհետաձգելի պրոբլեմները։ Առանց դրա հնարավոր չէ ճիշտ պլանավորել գյուղատնտեսությունը և բարելավել նրա ղեկավարման գործը։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի աշխատանքի առաջին 16 օրում այնտեղ այցելել է կես միլիոնից ավելի մարդ։ Ցուցահանդես են այցելում գյուղատնտեսության աշխատողներ՝ բոլոր ռեսպուբլիկաներից, երկրամասերից և մարզերից։ Խնդիրն այն է, որ առանց մի օր կորցնելու, կազմակերպվի ցուցահանդեսի մասնակիցների փորձի արմատավորումը բոլոր կոլտնտեսությունների, սովխոզների և ՄՏ կայանների պրակտիկայում։ Ընկերներից ոմանք այսպես են մտածում. գործերը կվերջացնենք և հետո կձեռնարկենք ցուցահանդեսի մասնակիցների փորձի արմատավորմանը։ Դա խորապես սխալ մոտեցում է։

Էլ ե՞րբ, եթե ոչ այսօր, ձեռնամուխ պետք է լինել եգիպտացորենի ցանքերի մշակմանը՝ բարձր բերքի վարպետների օրինակով, էլ ե՞րբ, եթե ոչ այսօր, առաջավոր տնտեսությունների օրինակով պետք է կազմակերպել անասունների մսուրա-յայլաղային պահպանումը՝ կանաչ կոնվեյերի կիրառմամբ, օգտագործել ցուցահանդեսի մասնակիցների փորձը սիլոսային կառուցվածքների պատրաստման ասպարեզում։ Էլ ե՞րբ, եթե ոչ այսօր, պետք է կոմբայնավարներին սովորեցնել աշխատանքի առաջավոր մեթոդները։

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

---

# ԻՆՉՊԵՍ ԱՆՑԿԱՑՐԻ ԶՐՈՒՅՑ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

Հ. ԱՂԱՄԱԼՅԱՆ
Երևանի Ձերժինսկու անվան
Հաստոցաշինական գործարանի ձուլարանի
ցեխի ագիտատոր

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Հուլիսյան պլենումը արդյունաբերության աշխատողների առաջ խնդիր դրեց աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել նոր աստիճանի, բարելավել արտադրանքի որակը և իջեցնել նրա ինքնարժեքը։

Ժողովրդատնտեսական ու պետական խոշոր նշանակություն ունեցող այդ խնդիրների կատարման համար պլենումը միաժամանակ նշեց այն ուղիները, որոնց միջոցով մեր արդյունաբերությունը պետք է ընթանա դեպի վերելք։

Հաշվի առնելով այդ հանգամանքը, վերջերս ունկնդիրների համար զրույց ունեցա աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու մասին։ Նախքան զրույցին անցնե-

յը հավաքեցի անհրաժեշտ նյութեր, այն սերտորեն կապելով մեր գործարանի ու մեր ցեխի առջև դրված խնդիրների հետ։

Զրույցի սկզբում ունկնդիրներին ծանոթացրի, թե ինչ է արված մեր երկրում և ապա մեր գործարանում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու ուղղությամբ։ Հայրենական Մեծ պատերազմից հետո, ասացի ես, չորրորդ հնգամյակի վերջին տարում (1950 թ.) մեր երկրի արդյունաբերության համախառն արտադրանքը համեմատած 1940 թվականի հետ, ավելացավ 73 տոկոսով, իսկ համեմատած 1913 թվականի հետ աճեց 12 անգամ։ Զարգացման այդ տեմպը բնորոշ է նաև մեր ռեսպուբլիկայի համար։ Եթե մինչռևոլյուցիոն Հայաստանում և հատկապես Երևանում չկար ոչ մի խոշոր գործարան կամ ֆաբրիկա, ապա այժմ զանազան տեսակի արտադրանք թողարկող գործարանների ու ֆաբրիկաների թիվը անցնում է մի քանի հարյուրից։ Ինչպես Սովետական Միության, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության տեխնիկական զինվածության հիմքը կազմում է մեքենաշինությունը, որի բազայի վրա զարգանում են նաև արդյունաբերության մյուս ճյուղերը և գյուղատնտեսությունը։ Մեքենաշինության սիրտը



հանդիսանում է հաստոցաշինությունը, որը արտադրում է մեքենա արտադրող մեքենաներ։ Եթե 1939 թվականին ամբողջ Սովետական Միության մեջ արտադրվում էր 55 հազար հաստոց, ապա ներկայումս այն ավելացել է մոտ երկուս և կես անգամ։

Չորրորդ հնգամյակի տարիների հետ համեմատած զգալի չափով ավելացրել է իր արտադրողականությունը նաև հաստոցաշինական մեր գործարանը։ Եթե 1946 թվականին մեկ հաստոցի պատրաստման վրա թափված աշխատանքը կազմում էր 2.040 ժամ, ապա 1954 թվականին այն իջեցվեց և հասցվեց 400 ժամվա, որով խիստ իջեցվեց թողարկվող արտադրանքի ինքնարժեքը։ Եթե հնգամյակի առաջին տարում՝ 1951 թվականին, ասացի ես, մեր գործարանի մեկ բանվորի արտադրողականությունը տարեկան կազմում էր 20.170 ռուբլի, ապա 1954 թվականին այն հասավ 29.100 ռուբլու։ Այսպիսով, գործարանի կոլեկտիվը տարեցտարի պայքարելով պետական առաջադրանքի կատարման համար, 1954 թվականի համախառն արտադրանքի պլանը կատարեց 106,8 տոկոսով, ապրանքայինը՝ 101,4 տոկոսով, աշխատան-

քի արտադրողականության բարձրացմանը՝ 101,5 տոկոսով, այդ նույն ժամանակ թողարկվող արտադրանքի ինքնարժեքը իջեցվել է 8,3 տոկոսով։ Գործարանը արտադրական ավելի բարձր պարտավորություններ է վերցրել այս տարվա համար։ Բացի հաստոցներից, նա այս տարի թողարկելու է նաև լայն սպառման մի շարք առարկաներ՝ չուգունե վառարաններ, տարբեր տրամաչափի պտուտակներ և այլն։

Բավական է ասել, որ ընթացիկ տարվա կիսամյա պլանը գործարանը համախառն արտադրանքի գծով կատարել է 100,1 տոկոսով, ապրանքայինը՝ 109,1 տոկոսով, դազգահների պատրաստմանը՝ 100,2 տոկոսով։

Խոսելով մեր ցեխի մասին նշեցի, որ նա նույնպես բարձրացրել է աշխատանքի արտադրողականությունը։ Վերջին վեց ամսվա ընթացքում մեր ձուլման ցեխը, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի հետ համեմատած, տվել է 140 տոննայով ավելի արտադրանք և յուրաքանչյուր տոննայի ինքնարժեքը, պլանայինի համեմատությամբ, իջեցրել 12 ռուբլով։ Մեկ քառակուսի մետր տարածությունից ստացված արտադրանքը, այդ նույն ժամանակամիջոցում, 2,4 տոննայից բարձրացել է 32 տոննայի։ Իսկ ինչպե՞ս մենք



հասանք այդ հաջողություններին։ Այդ հարցին պատասխանելու համար ամենից առաջ կանգ առա առաջավոր տեխնիկան արտադրության մեջ արմատավորելու վրա։ Ունկընդիրներին բացատրեցի, որ եթե մինչև 1950 թվականը մեր ձուլարանի ցեխը հաստոցների կաղապարումը կատարում էր գետնի վրա, պրիմիտիվ ձևով, ապա ներկայումս նմանօրինակ բոլոր տեսակի աշխատանքների 95 տոկոսը կատարվում է բարձր արտադրողականությամբ կաղապարող մեքենաների օգնությամբ։

Ձուլման բարդ պրոցեսները յուրացնելուն նպաստում է գործարանին կից գործող տեխմինիմումի խմբակների լավագույն աշխատանքը և անփորձ բանվորներին առաջավորներին կցելու մեթոդը։ Ներկայումս մեր ցեխի տեխմինիմումի խմբակներն ավարտածներից շատերը իրենց արտադրական պլանները կատարում են 150—200 տոկոսով։

Արտադրողականության բարձրացումը խոշոր չափով կախված է նաև մեքենաների տեխնիկական խնամքի բարելավումից։ Այս հարցը քննելիս, ես դիմեցի կոնկրետ օրինակների։

Վերցնենք թեկուզ ընկ. Հ. Սաֆարյանին, դիմելով ունկնդիրներին, ասացի ես։ Լավ խնամքի հետևանքով նրան հանձնված մեքե-







նան տեղադրման օրից դեռ մինչև այսօր նորոգման չի ենթարկվել և միշտ տվել է բարձր որակի արտադրանք։ Սակայն մեզ մոտ կան ընկերներ, որոնց հանձնված մեքենաները լավ չեն մաքրվում ու յուղվում, կամ էլ ժամանակին չեն վերանորոգվում, որի հետևանքով առանձին դեպքերում նրանց միջից դուրս եկող արտադրանքը իր որակական հատկանիշներով լինում է ցածր և շուտ է դուրս գալիս գործածությունից։ Իսկ այդ երևույթին վերջ տալու համար, սրելով ունկնդիրների ուշադրությունը, ավելացրի ես, անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր բանվոր օրվա աշխատանքը վերջացնելուց հետո, իրեն հանձնված կաղապարող մեքենան բարեխղճորեն մաքրի ու խնամի։

Արտադրողականության բարձրացմանը նպաստող մյուս հանգամանքը, որին ես անդրադարձա զրույցի ընթացքում, վերաբերվում էր առաջավոր փորձի փոխանակմանը և այդ փորձը արտադրության մեջ արմատավորելուն։ Կոնկրետ օրինակներով ունկնդիրներին պատմեցի, թե ինչպես անցյալ տարի մայիսին փորձի փոխանակման կարգով Թբիլիսիի համապատասխան գործարանն այցելելուց հետո կաղապարող Խ. Մուրադյանը կարողացավ տիրապետել կաղապարման նոր, առաջավոր մեթոդին, որը և մեծ կիրառում գտավ



մեր ցեխում։ Զրույցի ընթացքում շատ օրինակներ բերեցի նաև մեր գործարանի ու ցեխի առաջավորների փորձից։

Մեր ցեխում առանձին բանվորների կողմից երբեմն նկատվում են օրվա ռեժիմի խախտումներ։ Դեռ ընդմիջման զանգը չտված, այդ ընկերները աշխատանքը թողած գնում են նախաճաշելու, կամ ավելորդ զրույցի բռնվում մեկը մյուսի հետ և կամ որևէ պատրվակ բռնելով ժամերով բացակայում են աշխատանքից։ Այդ երևույթը նույնպես վատ է անդրադառնում ամբողջ ցեխի արտադրական պլանների կատարման վրա։

Նման երևույթին վերջ տալու համար, զրույցի ընթացքում պարսավանքի ենթարկեցի ծույլերին ու լոդրերին, միաժամանակ գովեցի այն ազնիվ աշխատողներին, որոնցից պետք է օրինակ վերցնեն աշխատանքում ետ մնացողները։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման շահերից ելնելով, զրույցի վերջում ունկնդիրներից ոմանք պատմեցին պլանների կատարման իրենց հաջողությունների մասին։ Ունկնդիրները խոստացան տարեկան արտադրական պլանը կատարել Հայաստանում սովետական կարգեր հաստատվելու 35-րդ տարեդարձի օրը՝ նոյեմբերի 29-ին։

---

# ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆ ՄՇԱԿԵԼՈՒ ՄԵՐ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԸ

## Նոյեմբերյանի շրջանի Քյորփլու գյուղի Սվերդլովի անվան կոլտնտեսության դաշտավարական երկրորդ բրիգադայի բրիգադիր Մուսալի Ջեյնալովի պատմածը

*Եգիպտացորենի մշակությամբ մեր կոլտնտեսությունը զբաղվում է դեռ անցյալ տարվանից։ Ուսանելի դաս քաղելով անցյալ տարվա մեր թույլ տված սխալներից, մենք ժամանակին և ավելի կազմակերպված ու ավելի լրջորեն զբաղվեցինք եգիպտացորենի ցանքի ու մշակման աշխատանքներով։ Դեռ վաղ աշուն էր, երբ իմ բրիգադային ամրացված և եգիպտացորենի համար առանձնացված 25 հեկտար հողամասի վրա մենք կատարեցինք ցրտահերկ։ Մոլախոտերի, վնասակար միջատների ու կրծողների դեմ պայքարելու և հողում անհրաժեշտ խոնավություն պահպանելու նպատակով տրակտորային բրիգադն ցրտահերկը կատարեց 28, որոշ դեպքերում՝ 30 սանտիմետր խորությամբ։ Գարնան հենց առաջին մի քանի օրում (մարտի 20—25) ե-*



*գիպտացորենի ցանքի համար առանձնացված հողամասերի վրա կատարեցինք կուլտիվացիա, իսկ ապրիլի առաջին օրերին, հետևելով եգիպտացորենի մշակությամբ զբաղվող մեր երկրի առաջավոր կոլտնտեսությունների և առանձին մարդկանց լավագույն փորձին, կատարեցինք 18—20 սանտիմետր խորությամբ կրկնավար և միաժամանակ սովորական փոցխում։ Այդ արեցինք այն նպատակով, որպեսզի կուլտիվացիայից հետո աճած մոլախոտերը լրիվ ոչնչացվեն և կոշտերը հարթացվեն։*

*Միայն այդ ագրոմիջոցառումներից հետո մենք կատարեցինք եգիպտացորենի ցանք։ Ցանքը կատարեցինք մեր շրջանի Ղալաչա գյուղի կոլտնտեսության փորձադաշտի կողմից նախօրոք փորձարկված «Հաջողություն» հիբրիդային սերմով։ Սկզբից սերմը ճիշտ ժամանակին ենթարկեցինք լաբորատոր ստուգման, ապա ախտահանեցինք այն։ Ախտահանումը կատարվեց մեկ ցենտներ սերմի համար 100 գրամ գրանոզոն տալու հաշվով։ «Հաջողություն» հիբրիդային սորտի ընտրությունը մեր կողմից պատահականություն չէր։ Այդ սերմի առավելությունն այն է, որ տեղական սորտերի հետ համեմատած, անջրդի պայմաններում նա ավելի դիմացկուն է, լավ*

է աճում, կողրերը շուտ են հասունանում և բարձր բերք տալիս։ Իսկ մեր հողա-կլիմայական պայմաններն էլ հենց այդպիսի սորտեր են պահանջում։

Ցանքը կատարեցինք սեղմ ժամկետում՝ այսինքն այն ժամանակ, երբ հողի միջի ջերմությունը հասել էր 10—12 աստիճանի։ Հատիկ ստանալու համար պահպանեցինք ագրոկանոններով նախատեսվող միջբուսային հեռավորությունը՝ 60—65 սանտիմետր, իսկ կանաչ մասսա ստանալու համար՝ 40—45 սանտիմետր։

Երբ դաշտում երևացին եգիպտացորենի առաջին ծիլերը (3—4 տերև), սկսեցինք նրանց սնուցումը։ Յուրաքանչյուր հեկտարի վրա շաղ տվեցինք 200 կիլոգրամ սուպերֆոսֆատ։ Դրանից անմիջապես հետո ԿԴ—35 միջշարքային տրակտորով, ցանքին հակառակ ուղղությամբ, զիգզագ փոցխերով կատարեցինք փոցխում, նախ՝ որպեսզի շաղ տրված պարարտանյութը մտնի հողի մեջ և երկրորդ՝ փշրվի հողի երեսի կարծրացած շերտը, որը խանգարում էր աշնանից և ձմռանից հողում կուտակված խոնավության պահպանմանը։ Որոշ ժամանակ անց, մենք կատարեցինք երկրորդ կուլտիվացիան։ Եգիպտացորենի ցանքատարածությունների մշակման հետա-



գա աշխատանքները՝ քաղհան-փխրեցում, նոսրացում և այլն, կատարեցինք մեծ խնամքով։

Ագրոկոմպլեքսի լրիվ կիրառման շնորհիվ այժմ կանաչին են տալիս իմ բրիգադայի մարդու հասակի հասնող եգիպտացորենի դաշտերը։ Առանձին բույսերի վրա աճել են 4—5 կողրեր։ Նախնական հաշվումները ցույց են տալիս, որ ինչպես մեր կոլտնտեսության առաջին բրիգադայի, նույնպես և իմ բրիգադայի եգիպտացորենի յուրաքանչյուր հեկտարից կստացվի առնվազն 200—250 ցենտներ կանաչ մասսա և 20—25 ցենտներ հատիկ, նախատեսված 100 ցենտներ կանաչ մասսայի և 18—19 ցենտներ հատիկի դիմաց։

Եգիպտացորենի այդ առատ բերքը պահպանելու նպատակով կոլտնտեսության վարչությունը այժմվանից արագ նախապատրաստական աշխատանք է տանում բերքահավաքի և սիլոսի աշտարակներ կառուցելու ուղղությամբ։ Արդեն պատրաստ են 225 տոննա տարողությամբ երկու աշտարակներ, շուտով կավարտվի նաև երկու այլ՝ 100 տոննա տարողությամբ աշտարակների կառուցումը։

# ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

✪ ՍՍՌՄ արդյունաբերության 1955 թվականի առաջին կիսամյակի համախառն արտադրանքի պլանը ամբողջությամբ վերցրած կատարվել է 103 տոկոսով։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը աճել է 12 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ բարձրացել է 7 տոկոսով և շինարարության մեջ 10 տոկոսով։

✪ Հինգերորդ հնգամյա պլանով նախատեսված էր 1955 թվականի արդյունաբերական արտադրության մակարդակը 1950 թվականի համեմատությամբ գերազանցել մոտավորապես 70 տոկոսով։ Մեկ տարվա ընթացքում՝ 1954 թվականի մայիսի 1-ից մինչև 1955 թվականի մայիսի 1-ը, արդյունաբերական արտադրության ծավալը 1950 թվականի մակարդակը գերազանցել է 71 տոկոսով։ Այսպիսով, արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալի գծով հինգերորդ



հնգամյա պլանը կատարված է ժամկետից շուտ, այսինքն 4 տարի 4 ամսում։

✪ 1955 թվականի առաջին կիսամյակում արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքը իջեցված է 3,8 տոկոսով։ Դրա շնորհիվ և նախորդ տարիների ընթացքում, աշխատանքի արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման շնորհիվ այս տարվա հուլիսի 1-ից կատարվեց վառելիքի, սև ու գունավոր մետաղների, մեքենաների ու սարքավորման, քիմիկատների, ցելյուլոզի ու թղթի արդյունաբերության արտադրանքի ու շինանյութերի մեծածախ գների նոր իջեցում, ինչպես նաև էլեկտրաէներգիայի ու վառելիքային էներգիայի երկաթուղային և ավտոմոբիլային բեռնափոխադրումների տարիֆների իջեցում։

✪ Երկաթուղային տրանսպորտում օրական միջին բեռնման ընդհանուր պլանը 1955 թվականի առաջին կիսամյակում կատարված է 103 տոկոսով, երկաթուղիներում բոլոր բեռների օրական միջին բեռնումը 1955 թվականի առաջին կիսամյակում, 1954 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ աճել է 9 տոկոսով։

✪ Ծովային նավատորմի մինիստրությունը 1955 թվականի առաջին կիսամյակում բեռնաշրջանառության պլանը կատարել է 106 տոկոսով և բեռների փոխադրումների պլանը 102 տոկոսով։ Ծովային տրանսպորտի բեռնաշրջանառությունը 1955 թվականի առաջին կիսամյակում, 1954 թվականի առաջին կիսամյա-

կի համեմատությամբ, ավելացել է 30 տոկոսով և բեռների փոխադրումը՝ 18 տոկոսով։ Գետային նավատորմի մինիստրությունը բեռնաշրջանառության և բեռների փոխադրումների պլանը կատարել է 87 տոկոսով, ավտոմոբիլային տրանսպորտի և խճուղային ճանապարհների մինիստրությունը բեռնաշրջանառության 1955 թվականի առաջին կիսամյակի պլանը կատարել է 95 տոկոսով, իսկ բեռների փոխադրումներինը՝ 99 տոկոսով։ Ավտոբուսներով ուղևորների փոխադրումների պլանը կատարված է 106 տոկոսով։ Ավտոմոբիլային տրանսպորտի շրջանառությունը 1955 թվականի առաջին կիսամյակում, 1954 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, ավելացել է 35 տոկոսով, բեռների փոխադրումները՝ 50 տոկոսով և ավտոբուսներով ուղևորների փոխադրումները՝ 48 տոկոսով։

✪ Պետական կապիտալ ներդրումների ծավալը շինարարության մեջ 1955 թվականի առաջին կիսամյակում, նախորդ տարվա նույն ժամանակի համեմատությամբ կազմեց 111 տոկոս։ Սակայն ամբողջությամբ վերցրած ժողովրդական տնտեսության մեջ կապիտալ ներդրումների կիսամյա պլանը կատարված է 93 տոկոսով։

✪ 1955 թվականի առաջին կիսամյակի վերջերին ժողովրդական տնտեսության մեջ բանվորների ու ծառայողների ընդհանուր թիվը, 1954 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է ավելի քան մեկ միլիոնով։ Արդյունաբերության, գյուղատն-



տեսության, շինարարության մեջ և տրանսպորտում բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների ու մասնագետների թիվը ավելացել է ավելի քան 900 հազարով։

✪ 1955 թվականի առաջին կիսամյակում ժողովրդական տնտեսությունը, ֆաբրիկա-գործարանային և գյուղատնտեսության մեխանիզացիայի դպրոցներից ստացել է 315 հազար երիտասարդ որակյալ բանվոր, որոնցից 235 հազար մեխանիզատորներ աշխատում են գյուղատնտեսության համար։

✪ Խոշոր հաջողություններ են ձեռք բերված գյուղատնտեսության բնագավառում։ Այս տարի ցորենի ցանքատարածությունը ավելացել է 11 միլիոն հեկտարով։ Երկրում ցանվել է 17,9 միլիոն հեկտար եգիպտացորեն, այսինքն 13,6 միլիոն հեկտարով ավելի, քան 1954 թվականին։ Անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի ավելի է ցանվել՝ երկարաթել վուշ 360 հազար հեկտար, շաքարի ճակնդեղ՝ 180 հազար հեկտար, արևածաղիկ՝ 360 հազար հեկտար, կարտոֆիլ՝ 330 հազար հեկտար։

✪ Խամ ու խոպան հողերում ՄՏ կայանները և սովխոզները 1954 թվականին և 1955 թվականի առաջին կիսամյակում հերկել են 26 միլիոն հեկտար։ Այդ հողերում ցանված է 20 միլիոն հեկտար, նախատեսված 13 միլիոն հեկտարի փոխարեն։ Խամ ու խոպան հողերի յուրացման շրջաններում այս տարվա գարնանը կազ-

մակերպվել է 300 նոր հացահատիկային սովխոզ, 124 սովխոզ էլ կազմակերպվել էր 1954 թվականին։

✪ Այս տարվա առաջին կիսամյակի ընթացքում մեր երկրի գյուղատնտեսությունն արդյունաբերությունից ստացել է ընդհանուր գործածության 79 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած) և հեռաշար մշակության՝ 31,5 հազար տրակտոր (ֆիզիկական հաշվումով), 58 հազար բեռնատար ավտոմոբիլ, 21 հազար հացահատիկային կոմբայն, 9 հազար կարտոֆիլահավաք կոմբայն, շաքարի ճակնդեղ հավաքող 3 հազար կոմբայն, 48 հազար տրակտորային գութան, 59 հազար տրակտորային շարքացան, 12 հազար կարտոֆիլատնկիչ քառակուսի-բնային տնկման համար և գյուղատնտեսական այլ շատ մեքենաներ ու սարքավորումներ նաև անասնաբուծական ֆերմաների համար։

✪ Սոցիալիստական գյուղատնտեսության մեջ տրակտորների թիվը 1955 թվականի հուլիսի 1-ին կազմեց ավելի քան 1 միլիոն 400 հազար (15 ուժանոցի վերածած) և հացահատիկային կոմբայններինը՝ 350 հազար հատ։ ՄՏ կայանները 1955 թվականի առաջին կիսամյակում կոլտնտեսություններում կատարել են վարի փոխադրած 29 միլիոն հեկտարով ավելի գյուղատնտեսական աշխատանքներ, քան անցյալ տարի նույն ժամանակաշրջանում։

✪ Ավելացել է անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Ինը ամսում 1954 թվականի հոկտեմբերի 1-ից մինչև 1955 թվականի հուլիսի 1-ը կոլ-



տնտեսություններում կթվել է 28 տոկոսով ավելի կաթ, քան 1953—54 թվականի նույն ժամանակաշրջանում, և 52 տոկոսով ավելի, քան 1952—53 թվականին։ Այդ նույն ժամանակամիջոցում 1 կովի կաթնատվությունը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել է 17 տոկոսով։ Ավելացել է նաև մսի, բրդի ու ձվի արտադրությունը։

✪ Կոլտնտեսություններում հանրային անասունների գլխաքանակը մինչև այս տարվա հուլիսի 1-ը, 1954 թվականի հուլիսի 1-ի համեմատությամբ, ավելացել է կովերինը՝ 7 տոկոսով, ոչխարներինը՝ 4 տոկոսով, իսկ սովխոզներում անասունների գլխաքանակը նույն ժամանակաշրջանում ավելացել է կովերինը՝ 10 տոկոսով, խոզերինը՝ 6 տոկոսով, ոչխարներինը՝ 7 տոկոսով։

---

ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 50-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

# ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ՌՈՒՍԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԸՆԹԱՑՔՈՒՄ

Բ. ԲԱԳԼԻԿՈՎ
Պատմական գիտությունների թեկնածու

*Սովետական Միության ժողովուրդները և ամբողջ աշխարհի աշխատավորները այս տարի նշում են Ռուսաստանի 1905—1907 թ. թ. ռևոլյուցիայի կեսդարյա փառապանծ հոբելյանը։ Դա իմպերիալիզմի դարաշրջանի առաջին ժողովրդական ռևոլյուցիան էր, որի վճռական հաղթանակով շահագրգռված էին պրոլետարիատը և գյուղացիությունը։*

*Ռևոլյուցիայի ղեկավար և գլխավոր շարժիչ ուժը պրոլետարիատն էր, որին գլխավորում էր Կոմունիստական պարտիան։ Իր շուրջը համախմբելով գյուղացիական մասսաներին, Ռուսաստանի բանվոր դասակարգը 1905—1907 թվականների ռևոլյուցիոն մարտերի ընթացքում դրեց գյուղացիության հետ ունենալիք դաշինքի հիմքերը, ստեղծեց այն հասարակական ուժը, որը ապահովեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը։*





1905—1907 թվականների ռևոլյուցիայի նախադրյալները Ռուսաստանը պատրաստել էր իր նախորդ շրջանի զարգացման ընթացքում։ 1861 թվականի գյուղացիական ռեֆորմը արագացրեց կապիտալիզմի զարգացումը քաղաքում և գյուղում։

Գյուղում կապիտալիզմի զարգացմանը զուգորդում էին գյուղացիական բազմամիլիոն մասսաների քայքայումն ու աղքատացումը և գյուղական բուրժուազիայի՝ կուլակության առաջացումը։ 1861 թվականին վերևից անցկացնելով գյուղացիական ռեֆորմը, կալվածատերերը կողոպտեցին գյուղացիներին, նրանցից խլեցին լավագույն հողերը, գյուղացիներին ստիպեցին հսկայական փրկագին վճարել իրենց ազատագրման համար, պահպանեցին խոշոր կալվածատիրական հողատիրությունը և դրանով իսկ գյուղացիությանը տնտեսական կախման մեջ դրին։

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է Ռուսաստանի հողատիրության ճորտատիրական բնույթը՝ որպես գյուղացիական շարժման հիմնական պատճառ։ Յուրաքանչյուր կալվածատեր միջին հաշվով ուներ 2.333 դեսյատին հող, իսկ գյուղացիական ծխերը մի-

ջին հաշվով ունեին ընդամենը 7 դեսյատին հող։

Գյուղական համայնքի հողերի մի նշանակալի մասը գտնվում էր կուլակների ձեռքին։ Գյուղացիների կեսից ավելին կազմում էին գյուղի պրոլետարներն ու կիսապրոլետարները, որոնց սիստեմատիկ քաղցի, սովամահության և անլուր ճնշման էին դատապարտել կալվածատերն ու կուլակը։

Միայն ռևոլյուցիոն ճանապարհով հնարավոր էր վերջ տալ կալվածատիրական հողատիրությանը և նվաճել դեմոկրատական ազատություններ։ Ռուսական ռևոլյուցիան գյուղացիական ռևոլյուցիա էր, որովհետև նրա կարևորագույն խնդիրը ճորտատիրության մնացորդների ոչնչացումն էր, ագրարային հարցի լուծումը։ Բայց ռևոլյուցիան հաղթել կարող էր միայն այն դեպքում, եթե պրոլետարիատը գլխավորեր և իր հետևից տաներ գյուղացիությանը։ Հաշվի առնելով վերահաս ռևոլյուցիայի խնդիրները, Վ. Ի. Լենինը դեռ իր ռևոլյուցիոն գործունեության առաջին տարիներին առաջ քաշեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի գաղափարը՝ որպես ցարիզմի, կալվածատերերի և կապիտալիստների տապալման գլխավոր միջոցի։





Քսաներորդ դարի սկզբին Ռուսաստանում արագորեն հասունացավ ռևոլյուցիան։ Արդյունաբերական ճգնաժամը, գործազրկությունը քաղաքներում և սովը գյուղում խիստ վատացրին աշխատավոր մասսաների դրությունը։ Պրոլետարիատը տնտեսական գործադուլներից անցնում է քաղաքական գործադուլների և փողոցային ցույցերի, առաջադրելով «Կորչի ցարական ինքնակալությունը» լոզունգը։

Բանվորական շարժումն իր ազդեցությունն է ունենում գյուղացիության վրա։ 1902 թվականի գարնանը և ամռանը Պովոլժյեում և Ուկրաինայում սկսվեցին գյուղացիների մասսայական ելույթները կալվածատերերի դեմ։ 1905 թվականի հունվարի 9-ին (22-ին) Պետերբուրգի բանվորների խաղաղ ցույցի գնդակոծությամբ ցարական կառավարությունը երկրում սանձազերծեց քաղաքացիական պատերազմ։ 1905 թվականի հունվարի 9-ի «Արյունոտ կիրակին» դարձավ ռևոլյուցիոն շարժման հզոր վերելքի սկզբնակետը։

Բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարի հուժկու վերելքի ազդեցության ներքո ծավալվեց գյուղացիական շարժումը Ռուսաստանում։ 1905 թվականի ընթացքում ա-

վելի քան երեք և կես հազար գյուղացիա-
կան ելույթ է արձանագրվել։ Գյուղացինե-
րի պայքարը կալվածատերերի դեմ գնալով
ավելի սուր ձևեր էր ընդունում։ Փետրվա-
րին երկրում տարածվեցին գյուղացիական
հուզումների ալիքը և բատրակների գործա-
դուլները։

Գյուղացիական ելույթներն ավելի կազ-
մակերպված էին ընթանում Վրաստանում,
որոնք արդեն 1905 թվականի փետրվարին
քաղաքական բնույթ էին ստացել։ Դրանք
զարգանում էին բոլշևիկների ղեկավարու-
թյամբ։ Գյուղացիների և բատրակների մաս-
սայական և կազմակերպված շարժում ծա-
վալվեց 1905 թվականի մարտին՝ Մերձբալ-
թիկայում։ Լատվիայի գյուղատնտեսական
բանվորները ընդհանուր գործադուլ կազմա-
կերպեցին իրենց տերերի՝ գերմանական բա-
րոնների դեմ։ 1905 թվականի սկզբներին
գյուղացիական շարժումն ընդգրկեց Եվրո-
պական Ռուսաստանի բոլոր գավառների մո-
տավորապես մեկ յոթերորդական մասը։

1905 թվականի ապրիլին կայացավ բոլ-
շևիկյան պարտիայի երրորդ համագումարը,
որը որոշումներ ընդունեց սկսված ռևոլյու-
ցիայի ընթացքում բոլշևիկների տակտիկայի
բոլոր հիմնական հարցերի վերաբերյալ։ Հա-



մագումարն իր բանաձևում, որը գրել էր Վ. Ի.
Լենինը, պարտիայի առաջ խնդիր դրեց ամե-
նաեռանդուն կերպով պաշտպանել գյուղա-
ցիական շարժումը և նրա բոլոր ռևոլյուցիոն
ձգտումները՝ ընդհուպ մինչև կալվածատիրա-
կան հողերի բռնագրավումը։ Համագումարն
առաջ քաշեց գյուղացիական ռևոլյուցիոն կո-
միտեներ ստեղծելու լոզունգը և գյուղացինե-
րին կոչ արեց հրաժարվել զինապարտությու-
նից և տուրքերի վճարումից։

Գյուղացիական շարժումը առավել բարձր
վերելքի հասավ 1905 թվականի աշնանը։
Գյուղացիական ապստամբություններն այդ
ժամանակաշրջանում ընդգրկել էին Կենտրո-
նական-Սևահողային շրջանը, Պովոլժյեն,
Ուկրաինան, Անդրկովկասը, Մերձբալթիկան։

Ցարական կառավարությունը ձեռք էր առ-
նում ամենադաժան միջոցներ բանվորների
և գյուղացիների ելույթները ճնշելու համար։
Գյուղացիական շարժմամբ ընդգրկված շրջ-
ջաններն ուղարկվում էին բազմաթիվ պատ-
ժիչ արշավախմբեր։ Շատ նահանգներում և
գավառներում հայտարարվեց ռազմական
դրություն կամ մտցվեց ուժեղ պահնորդական
պահպանություն, որտեղ ցարական օպրիչ-
նիկները արյունոտ դատաստան էին տեսնում
գյուղացիների նկատմամբ։

Գյուղացիության մեջ ռևոլյուցիոն շարժման զարգացման գործում կարևորագույն նշանակություն ունեցավ բոլշևիկների ագրարային ծրագիրը, որը մշակել էր Վ. Ի. Լենինը։ Լենինյան ագրարային ծրագիրը պահանջում էր բռնագրավել կալվածատիրական, եկեղեցական, վանքապատկան, ուդելային ու արքունական հողերը և ազգայնացնել բոլոր հողերը։ Այդ պահանջները բոլշևիկները կապակցում էին ցարական ինքնակալության ոչնչացնելու և դեմոկրատական ռեսպուբլիկա հաստատելու հետ։ Բոլշևիկները գյուղացիներին կոչ էին անում՝ անհապաղ գրավել կալվածատիրական հողերը, ստեղծել գյուղացիական ռևոլյուցիոն կոմիտեներ, ակտիվորեն աջակցել պրոլետարիատին՝ ցարիզմի դեմ նրա մղած պայքարում։ Բոլշևիկյան կազմակերպությունները առանձնահատուկ ուշադրություն էին նվիրում գյուղի պրոլետարական և կիսապրոլետարական խավերի համախմբմանը, որոնք առավել ակտիվ դեր էին խաղում գյուղացիական շարժման մեջ։

Մոսկվայի դեկտեմբերյան զինված ապստամբությունը հանդիսացավ 1905—1907 թ. թ. ռևոլյուցիայի զարգացման գագաթնակետը։ Բայց դեկտեմբերյան զինված ապստամբության պարտությունից հետո էլ ցա-



րիզմը ստիպված էր դեռ երկար պայքար մղել ռևոլյուցիայի նահանջող ուժերի դեմ։ 1906 թվականի ամառը գյուղացիական շարժումը գտնվում էր բարձր մակարդակի վրա, փոքրինչ զիջելով 1905 թվականի աշնան գրոհին։

Դեկտեմբերյան զինված ապստամբության պարտությունից մինչև մեկ և կես տարի հետո ցարիզմին հաջողվեց ճնշել ռևոլյուցիան։ Ռևոլյուցիայի պարտության հիմնական պատճառն այն է, որ չհաջողվեց մեկ միասնական ռևոլյուցիոն հոսանքի մեջ միացնել բանվորների, գյուղացիների և զինվորների ելույթները։ Ռևոլյուցիայի ընթացքում դեռևս ամուր չէր բանվորների և գյուղացիների դաշինքը, գյուղացիությունը գործում էր խիստ ցրված, անկազմակերպ և ոչ բավականաչափ վճռականորեն։ Գյուղացիների մի նշանակալի մասն այն ժամանակ գտնվում էր էսերների ազդեցության տակ։ Կալվածատերերի դեմ գյուղացիների ռևոլյուցիոն առավել խոշոր ելույթներն սկսվեցին միայն այն ժամանակ, երբ ցարական կառավարությանն արդեն հաջողվել էր ճնշել ռևոլյուցիայի հիմնական օջախները երկրի արդյունաբերական կենտրոններում։ Հանդես գալով կալվածատերերի դեմ, գյուղացիների մեծ մասը դեռ պայքարի դուրս չէր գալիս ցարի դեմ, հավատում էր,

թե հնարավոր է, որ ինքը հող կստանա ցարի ձեռքով։

Ազատության համար բանվորների և գյուղացիների՝ համատեղ պայքարում կրած ծանր զոհերը և թափած արյունը զուր չանցան։ Բանվորները և գյուղացիները անհրաժեշտ դաս առան ռուսական առաջին ռևոլյուցիայի պարտությունից և 1917 թվականի հոկտեմբերին Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պատմական հաղթանակ տարան։

1905—1907 թվականների ռևոլյուցիան հանդիսացավ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի լենինյան գաղափարի կենսական ուժի առաջին պատմական ստուգումը։ Այդ դաշինքը, որը առաջացել և ամրապնդվել է ցարիզմի և բուրժուազիայի տապալման համար մղված պայքարի ընթացքում, սոցիալիստական վերափոխումների պրոցեսում, այժմ կազմում է սոցիալիստական հասարակարգի զարգացման ու ամրապնդման համար, կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարի անսասան հիմքը։

---



# ԿՈՐԵԱՅԻ ԱԶԱՏԱԳՐՄԱՆ 10 ՏԱՐԻՆ

(Թվեր և փաստեր)

1945 թվականի օգոստոսի 15-ին հերոսական Սովետական Բանակը կորեական ժողովրդին ազատագրեց յապոնական գաղութային ճնշումից։ Այդ օրվանից կորեական ժողովրդի համար բացվեց ազատ կյանքի ուղին։ Բանվորների և գյուղացիների դաշինքի վրա հիմնված ժողովրդական իշխանությունը գլխավորում է երկրի դեմոկրատական վերակազմումը և հերոսական պայքարը։

✪ Աշխատանքային պարտիայի ղեկավարությամբ երկրում անց է կացված խոշոր արդյունաբերության ազգայնացում, որի շնորհիվ ամբողջ արդյունաբերության 90 տոկոսը, այսինքն 1.034 գործարան, ֆաբրիկա, հանքահոր, երկաթուղի, ծովային, գետային, ավտոձեռնարկություն, կապի միջոցները, բանկերը, իրիգացիայի խոշոր միջոցները անցել են պետությանը։ Այս բոլորի շնորհիվ ժողովրդական տնտեսության առաջավոր ճյուղերում ամրապնդվել է տնտեսության սոցիալիստական ձևը։

✪ Ժողովրդական իշխանություն հաստատվելուց գրեթե մեկ և կես տարում, այսինքն 1946 թվականի վերջին, երկրում արդեն վերականգնված և շահագործման

էր հանձնված 822 արդյունաբերական ձեռնարկություն։

✪ 1947 թվականի փետրվարի 19-ին, ծայրամասային, քաղաքային և գավառային ժողովրդական կոմիտեների համագումարը ընդունեց պետական օրենք, որով և նախատեսվեցին Հյուսիսային Կորեայի վերականգնման և զարգացման կոնտրոլ թվերը։ Ժողովրդատնտեսական պլանի հիմնական ուղղությունը դա երկրի էկոնոմիկայի գաղութային միակողմանիության վերացումն էր։ Այդ առաջադրանքը հաջողությամբ կատարվեց։ Հատկապես արդյունաբերության բնագավառում ձեռք բերած հաջողությունները հնարավորություն տվեցին ստեղծել տնտեսական այն հիմքերը, որոնք բարելավեցին ժողովրդի կյանքը։

✪ 1948 թվականին արդյունաբերության պլանը կատարվեց 102,9 տոկոսով, արտադրության մակարդակը 1947 թվականի համեմատությամբ աճեց մինչև 139,1 տոկոսով, իսկ 1946 թվականի հետ համեմատած՝ ավելի քան երկու անգամ։

✪ Կորեայի ազատագրումից հետո երկրում չտեսնված տեմպերով զարգացավ արդյունաբերությունը։ Եթե արդյունաբերության ծավալը 1946 թվականին համարենք 100, ապա 1947 թվականին այն կլինի 189,3, իսկ 1948 թվականին՝ 263,3, 1949 թվականին՝ 377,1 և 1950 թվականին՝ 511։

✪ 1950 թվականի հունիսի 25-ին ԱՄՆ-ի իմպերիալիստների և դավաճան Լի Սին Մանի զինված ինտերվենցիան ընդհատեց Հյուսիսային Կորեայի ժողո-



վրդի խաղաղ, ստեղծագործական աշխատանքը։

✪ Կորեական ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայի Գերագույն Ժողովրդական ժողովի յոթերորդ սեսիան ընդունել է ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման եռամյա՝ 1954—1956 թ. թ. պլանը։ Այդ պլանով նախատեսվում է 1956 թվականին պետական և կոոպերատիվ արդյունաբերության արտադրանքն ավելացնել 2,6 անգամ՝ համեմատած 1953 թվականի հետ։ Այդ պլանի համաձայն արդյունաբերության մեջ կներդրվի 37.360 միլիոն վոն։ Արդյունաբերական արտադրանքի թողարկման և կապիտալ շինարարության առաջադրանքները կատարելու համար նախատեսված է աշխատանքի արտադրողականությունը 1956 թվականին բարձրացնել 76 տոկոսով՝ համեմատած 1953 թվականի, իսկ շինարարության մեջ՝ 73 տոկոսով։

✪ Ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման պլանի առաջին տարվա՝ 1954 թվականի բոլոր առաջադրանքները հաջողությամբ կատարված են։ Ամրապնդելով ձեռք բերած հաջողությունները, կորեացիները արդյունաբերության համախառն արտադրանքի մակարդակը 1949 թվականի հետ համեմատած բարձրացրել են 1,5 անգամ, այլ կերպ ասած նրանք հասել են եռամյա պլանով նախատեսված 1956 թվականի մակարդակին։

✪ Խոշոր փոփոխություններ են տեղի ունեցել Հյուսիսային Կորեայի գյուղատնտեսության մեջ։ Երկրում աշխատում են ավելի քան 12.400 գյուղատնտեսական

կոոպերատիվներ, որտեղ ընդգրկված է գյուղական տնտեսությունների 43 տոկոսը։ Գյուղատնտեսական կոոպերատիվները գործնականում ցույց են տալիս կոլեկտիվ տնտեսությունը վարելու առավելությունը և այժմ երկրի գյուղատնտեսության մեջ առաջատար դեր են խաղում։

✪ Կորեական ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայում ստեղծվել է Գիտությունների ակադեմիա, որն իր հիմնական նպատակն է դրել օժանդակել ռեսպուբլիկայում գիտության ծաղկմանը։ Այդ նպատակով Գիտությունների ակադեմիան իր աշխատանքը կենտրոնացրել է գիտության խոշորագույն խնդիրների ուղղությամբ, ուսումնասիրում է երկրի բնական հարստությունները, արտադրողական ուժերը, ժողովրդի մեջ լայնորեն տարածում է կուլտուրան, մարդկության գիտա-տեխնիկական նվաճումները, օժանդակում է գիտական կադրերի որակավորմանը։ Միայն 1955 թվականին բնական և տեխնիկական գիտությունների գծով մշակվելու է 46 թեմա, գյուղատնտեսական և բժշկական գիտությունների գծով՝ 96 և հասարակական գիտությունների գծով՝ 50 թեմա։

✪ Վերջին երկու տարվա ընթացքում Կորեայի ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայում վերականգնված և կառուցված է 3.698 դպրոցական շենք։ Վերջերս ԿԺԴՌ-ի Գերագույն ժողովրդական ժողովի նախագահն որոշեց 1956 թվականի օգոստոսի 1-ից անցկացնել ընդհանուր պարտադիր տարրական ուսուցում։

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 2. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ՀԱՆՈՒՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ

Գրականություն

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Հայտարարություն Չորս տերությունների կառավարությունների ղեկավարների խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 21-ի համարում։*

ՍՍՌՄ դելեգացիայի նախագիծը— Եվրոպայի կոլեկտիվ անվտանգության Համաեվրոպական պայմանագիրը *(հիմնական սկզբունքներ), տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 22-ի համարում։*

ՍՍՌՄ դելեգացիայի նախագիծը—Չորս տերությունների կառավարությունների ղեկավարների խորհրդակցության որոշումը սպառազինությունների կրճատման և ատոմային զենքի արգելման հարցերի վերաբերյալ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 23-ի համարում։*

Չորս տերությունների կառավարությունների ղեկավարների դիրեկտիվները Արտաքին գործերի մինիստրներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 26-ի համարում։*

Խաղաղության ձգտումը բոլոր ժողովուրդների ամենաջերմ ձգտումն է, «*Պրավդա*»-*ի օգոստոսի 1-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի օգոստոսի 2-ի համարում։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Ջորս տերությունների կառավարությունների ղեկավարների Ժնևի խորհրդակցության արդյունքները, զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ սեսիայում 1955 թ. օգոստոսի 4-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի օգոստոսի 5-ի համարում։*

## 2. ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ ՍՍՌՄ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

### Գրականություն

Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին, *ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը ընդունված 1955 թվականի հուլիսի 11-ին ընկ.* Ն. Ա. Բուլգանինի *զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 14-ի համարում։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հուլիսի 4-ին, տպագրված «Ս. Հ.»-ի հուլիսի 17-ի, 19-ի և 20-ի համարներում։*



Դեպի Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի 20-րդ համագումարը *«Պրավդա»-ի հուլիսի 18-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի հուլիսի 19-ի համարում։*

Համարձակորեն արմատավորել աշխատանքի պրոգրեսիվ մեթոդները, *«Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված հուլիսի 21-ի համարում։*

## 3. ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1955 ԹՎԱԿԱՆԻ ԱՌԱՋԻՆ ԿԻՍԱՄՅԱԿԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԸ

### Գրականություն

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հուլիսի 4-ին, տպագրված «Ս. Հ.»-ի հուլիսի 17-ի, 19-ի և 20-ի համարներում։*

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1955 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին, *ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական վարչության հաղորդագրությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 22-ի համարում։*

## 4. ԼՐԻՎ ԿԱՐՈՂՈՒԹՅԱՄԲ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ՏԵԽՆԻԿԱՆ

### Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնաբուծական մթերքների

արտադրությունն ավելացնելու մասին, *զեկուցում ՍՄԿԿ կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հունվարի 25-ին, Հայպետհրատ, 1955, էջ 10—27։*

Մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին, *ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿԿ կենտրոնական Կոմիտեի որոշումները, Հայպետհրատ, 1953, էջ 104—136։*

Կազմակերպված անցկացնենք նացանատիկային կուլտուրաների բերքահավաքը, *«Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի առաջնորդողը, տպագրված 1955 թվականի № 7-ում։*

5. ԱՐԱԳ ԿԵՐՊՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐ ՀԱՆՁՆԵԼՈՒ ՊԵՏԱԿԱՆ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին, *զեկուցում ՍՄԿԿ կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հունվարի 25-ին, Հայպետհրատ, 1955, էջ 72—85։*

Հաջողությամբ անցկացնենք նացամթերումները, *«Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված 1955 թվականի հուլիսի 23-ի համարում։*

---

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Վարդանյան— *«Դրիբոյեդովը և հայ թատրոնը», 120 էջ, գինը 4 ռ. 65 կոպեկ, տիրաժ 3.000։*

Վ. Ներկարարյան— *«Հովհաննես Սարուխանյան», համառոտ կենսագրական ակնարկ, 68 էջ, գինը 2 ռ. 30 կոպեկ, տիրաժ 10.000։*

Լևոն Մեսրոպ— *«Կախարդող լեռը», վեպ, 296 էջ, գինը 6 ռուբլի, տիրաժ 5.000։*

Արիգ Ավագյան— *«Շիկացած հող», վեպ, 468 էջ, գինը 7 ռ. 95 կոպեկ. տիրաժ 5.000։*

Նար-Դոս— *«Երկերի ժողովածու», հատոր 2-րդ, 614 էջ, գինը 10 ռուբլի, տիրաժ 15.000։*

Դ. Ադայան— *«Բանաստեղծություններ», 20 էջ, գինը 1 ռուբլի 15 կոպեկ, տիրաժ 10.000։*

Մ. Շաքիրյան— *«Զինվորները», վեպ, 894 էջ, գինը 14 ռուբլի, տիրաժ 5.000։*

Ֆ. Սիդորով, Ի. Անակին, Զ. Զգիրսկի— *«Գյուղատնտեսական մեքենաների նորոգումը», գիրքը նախատեսվում է գյուղատնտեսության մեխանիզատորների համար, 360 էջ, գինը 6 ռ. 80 կոպեկ, տիրաժ 4.000։*

Գ. Գրիգորյան— *«Թաղարային սածիլների աճեցումը կոլտնտեսություններում», 47 էջ, գինը 50 կոպեկ, տիրաժ 3.000։*

Ս. Բարսեղյան, Ս. Եղիկյան, Ա. Մկրտչյան— «Ե-





գիտատացորենն արժեքավոր կուլտուրա է», 30 էջ, գինը 60 կոպեկ, տիրաժ 5.000։

Է. Գաբրիելյան, Բեկետովսկայա— «Սերկևիլ», 72 էջ, գինը 1 ռուբլի, տիրաժ 1.000։

Գ. Եսայան— «Տխլենի», 60 էջ, գինը 70 կոպեկ, տիրաժ 1.000։

Է. Վարդունի— «Երեխաների աշխատանքային դաստիարակությունը ընտանիքում», 26 էջ, գինը 50 կոպեկ, տիրաժ 6.000։

Հայկական ՍՍՌ Պավիլիոնը— (ուղեցույց ձեռնարկ), 62 էջ, գինը 85 կոպեկ, տիրաժ 3.000։

---

## СОДЕРЖАНИЕ



---


Խմբագիր՝ Գ Ր. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА

№ 15 1955 г.

ՎՖ 12225 Պատվեր 672 Տիրաժ 8760

ՀՍՍՌ Կուլտ. մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8
1955 թ., գինը 50 կոպ.։